## ՔԱՆԻ ՄԸ ՏՈՂՈՎ

55 ՄԻԼԻԱՌԻ նոր տուրքեր պիտի դրուին Ֆրանսայի մէջ ։ Պաշտօնական յայտարարութիւնը պիտի ըլլայ այսօր՝ Ուրբաթ Տը Կոլի կողմէ ։ Առաջին առթիւ հինգ ֆրանք յաւելում հրանիւթին վրայ եւ կարգ մը տուրքեր հարստութեան արտաքին նշաններու վրայ ։

ՍԱՀՄԱՆԱԴՐՈՒԹԵԱՆ նախածրագիրը հրապարակուեցաւ անցի օր, ինչպէս գրած էինք, եւ առաջին հակազդեցութիւնները շատ վերապահ են ։ Ընդհանուր ձեւով կուսակցութիւնները իրենց դիրքը ճշդելէ առաջ, կը սպասեն Խորհրդակցական Կոմիտէին քննութեան եւ կարծիքին որոնք պիտի յայտնուին Օգոստոս 15ին ։ Մամուլն ալ առանց դիրք ճշդելու, վերապահ կարծիք մը ունի, յիշենք Ֆիկառոյի մէջ Անտրէ Սիկֆրիտի մասնակի բայց յստակ դիտողութիւնները ։ Նոր սահմանադրութեան պատկերը կը ներկայացնենք մեր վաղուան թիւով ։

ՅԵՍԹՕՉՈՎԱՅԻ (Լեհաստան) մէջ, կարգ մը միջադէպեր պատահեցան ։ Այդ վանքը, որ Լեհաստանի Լուրտն է, ենթարկուած էր շարք մը խուզարկութիւններու, ինչ որ կարտինալ Վիշցինսքիի բողոքին առիթ տուած էր ։ Իշխանութիւնները կը փորձեն արդարացումներ գտնել բայց դէպքը մեծ յուզում յառաջ բերած է ժողովուրդին մօտ ։

ԱՐԵՒՄՏԵԱՆ երեք մեծ պետութիւնները՝ Ֆրանսա, Անգլիա եւ Ամերիկա այսօր — վաղը պիտի պատասխանեն Խրուշչեւի ։ Ուաշինկթըն եւ Լոնտոն պատրաստած են արդէն իրենց նամակները ։ Զօր. Տը Կոլի պատասխանը հինգշաբթի օր տակաւին չէր խմբագրուած. Փարիզ միշտ դէմ կը մնայ ՄԱԿի հովանաւորութեամբ եւ Նիւ Եորքի մէջ գումարուելիք Մեծերու ժողովի մը ։

ԱՐԵՒՄՏԵԱՆ ԳԵՐՄԱՆԻՈՅ կառավարութիւնը կը հաղորդէ թէ Իտալիոյ Վարչապետը՝ Ֆանֆանի, Ուաշինկթըն եւ Լոնտոն այցելելէ ետք պիտի երթայ Պոն՝ Վարչապետ Ատընաուըրի հետ խորհրդակցելու համար ։

ԿԻՊՐՈՍԻ մէջ նոր մահափորձեր եղան. Լարնաքայի մէջ յոյն ծերունի մը մորթուեցաւ Թուրքերու կողմէ, Նիկոսիոյ մէջ երիտասարդ յոյն հովիւ մը դաշունահարուեցաւ, ուրիշ Յոյն մը սպաննուեցաւ Նիկոսիոյ քաղաքին մէջ ։ Յունիս 7էն ի վեր աւելի քան հարիւր հոգի սպաննուած է կղզիին մէջ ։

Խ. ՄԻՈՒԹԵԱՆ մէջ ինքնավար Հանրապետութիւն հռչակուեցաւ Կալմուկիստանը (Քալմուքի), որ կը գտնուի Վոլկայի գետաբերանին աջ ափին վրայ. Կալմուկները կովկասեան ժողովուրդներու խառնուրդէ մը կազմուած են. Բ. Աշխարհամարտի ընթացքին Կալմուկները, Պալկարները, Չէչէնները խիստ պատիժներու ենթարկուած էին, նկատելով որ կը գործակցէին Գերմանացիներու հետ. անոնց մեծ մասը աքսորուած էր Խազախստան ։ Կալմուկիստանի մայրաքաղաքն է Աստրախան. 1939ին բնակչութեան թիւը կը հասնէր 134.327 հոգիի ։

ՋՈՒԻՑԵՐԻԱՅԷՆ արտաքսուեցաւ չեխ դիւանագէտ մը՝ Անթոս, որ լրտեսութիւն կ՚ընէր ։

ՄՈՍԿՈՒԱՅԻ կառավարութիւնը բողոքեց Ամերիկայի եւ Պարսկաստանի իշխանութեանց, որ ամերիկեան օդանաւ մը Յուլիս 28ին, Պարսկաստանի սահմանէն 25 քիլոմեթր անցած է խորհրդային շրջագիծին մէջ. այդ օդանաւը կը գործածուի լուսանկարներ առնելու համար ։

ԹՈՒՐՔԻԱՅԷՆ սուրիական սահմանը մտան Թուրք զինուորներ՝ ճիփով մը եւ կրակ բացին սուրիացի պահակներու վրայ. քառորդ ժամուան զինամարտէ մը ետք, Սուրիացիները յաջողեցան ետ մղել Թուրք զինուորները. Ժամ մը յետոյ Թուրքերը սկսած են դիրք բռնել սուրիական սահմանին իշխող Թրքական բարձունքներու վրայ ։

ՄԱՐՈՔԻ մէջ «Ֆիկառօ»ն արգիլուեցաւ՝ անորոշ ժամանակի համար, յայտարարեց Վարչապետ Պալֆարէյ. փարիզեան օրաթերթին Մարոքի թղթակիցը՝ Անրի Տիւքէր, արտաքսուեցաւ երկրէն ։ «Ֆիկառոյ»ի տնօրէնին բողոքը նկատի չէ առնուած Մարոքի կառավարութեան կողմէ ։

Imprimé sur les presses du journal HARATCH
17, Rue Bleue, 17 — PARIS (9e)



### ՄԵՐ ԲԱԺԱՆՈՐԴՆԵՐՈՒՆ՝ ԱՐՁԱԿՈՒՐԴԻ ԱՌԹԻՒ

Արձակուրդի առթիւ կը խնդրուի մեր այն բաժանորդներէն, որոնք կը փափաքին իրենց հասցէն փոխել, հարիւր ֆրանք ղրկել վարչութեան, ինչպէս նաեւ՝ նորին հետ, իրենց նախկին հասցէն ։

Կը խնդրուի հեռաձայնով չյայտնել նման փոփոխութիւններ, այլ՝ միայն գրաւոր ։ Շնորհակալութեամբ՝

ՎԱՐՉՈՒԹԻՒՆ

### ՆՈՒԷՐՆԵՐ

Այրի Տիկին Մ. Ցակոբեանի մահուան առթիւ փոխան ծաղկեպսակի հետեւեալ նուիրատուութիւնները եղան Սեր. Նահանգային Մուրատ Ռափայելեան Ուսումնասիրացին ։ Եղիազար Մինասեան հազար ֆր. Ուսումնասիրացին, հինգ հարիւր ֆր. Կապոյտ Խաչին եւ հինգ հարիւր ֆր. ալ Խրիմեան զպրոցին, Նշան Դարբինեան հազար, Տէր եւ Տիկին Փէշտիմալճեան հազար, Յարութիւն Շիրվանեան հինգ հարիւր, Խաչիկ Քէօշքէրեան հինգ հարիւր ։

Ստանալ Պ. Դարբինեանէ ։



## ՀԵՐՈՍՆԵՐՈՒ ՕՐԸ

### ՎԱԼԱՆՍԻ ՄԷՋ

Հ. Յ. Դ. Վալանսի Շրջ. կոմիտէն կը տօնէ Խանասորի արշաւանքին 61րդ տարեդարձը ։

Մասնակցութեամբ Հ. Յ. Դ. Նոր Սեբաստիոյ Շ. Միսաքեան խումբին ։

Այս Կիրակի ամբողջ օրը Սէն Փէրէի Մայրապետներուն վանքին մօտ, զովասուն անտառին մէջ ։

Կը նախագահէ ընկեր Յ. ԿՕՇԿԱՐԵԱՆ ։

Գեղարուեստական բաժին Նոր Սեբաստիոյ կողմէ, երգ, արտասանութիւն, հայկական շուրջպար եւ եւրոպական պարեր ։

Տեղւոյն վրայ կը գտնէք առատ ուտելիք եւ զով ըմպելիներ ։

Ծանօթ.— Օթօքառ առնել Ասիւրանս Միւթիւէլին առջեւէն, իջնել Սէն Փէրէ ։

### ԿԱՊՈՅՏ ԽԱՉԻ ԿԱՅԱՆ

Բ. խումբը Փարիզէն կը մեկնի Օգոստոս վերջին, կառ տը Լիոն գտնուիլ ոչ աւելի կանուխ քան ժամը ճիշդ 22, որպէսզի կարելի ըլլայ անմիջապէս ներս մտնել ։ Հաւաքատեղի Փլաս տը Լ'Օրլօժ ։

Լիոնի շրջանի պզտիկներու մեկնում 4 Օգոստոսին ։ Ժամը ճիշդ 16ին գտնուիլ Փէռաշի կայարանի ժամացոյցին տակ ։

## ՑՈՒՑԱՏԵՏՐ

Հ. Յ. Դ. ՄԱՐՍԷՅԼԻ Շրջ. կոմիտէն ժողովի կը հրաւիրէ հետեւեալ ենթակոմիտէները, ուր իւրաքանչիւր ընկերոջ ներկայութիւնը պարտաւորիչ է ։

Զաւարեան, Ակնունի, Համազասպ եւ Գէորգ Չաւուշ, Այս Շաբաթ, ժամը 21ին ։

Նիկոլ – Դուման, Վռամեան եւ Արամ Այս Կիրակի, կէսօրէ վերջ ։

Մուրատ, Քրիստափոր եւ Հայաստան 9 Օգոստոս Շաբաթ, ժամը 21ին ։

Թաթուլ, Ընկեր Կայծ, 10 Օգոստոս, Կիրակի կէսօրէ վերջ ։

Վարանդեան, Ընկ. Յ. Օ.ի բնակարանը 11 Օգոստոս, երկուշաբթի իրիկուն ։

Այս բոլոր ժողովներուն ներկայ կ'ըլլան Շրջ. ժողովի պատգամաւոր ընկերները ։

ԼԻՈՆ.— Հ. Յ. Դ. «Վարանդեան» կոմիտէն ընդհ. ժողովի կը հրաւիրէ իր բոլոր ընկերները, այս Ուրբաթ, ժամը 20.30ին, Յոյներու սրահը ։ Կարեւոր օրակարգ ։

ՍԷՆԹ ԷԹԻԷՆ.— Հ. Յ. Դ. «Անտոք» ենթակոմիտէի ընդհ. ժողովը այս Շաբաթ, ժամը 21ին, հայ մատրան մէջ ։ Բոլոր ընկերներու ներկայութիւնը անհրաժեշտ է ։

### ՍՏԻՊՈՂԱԲԱՐ Կ'ՈՒԶՈՒԻՆ

Երկու վկայեալ հիւանդապահուհիներ կ'ուզուին հայկական դոյգ ծերանոցներուն համար (Անթիպի եւ Մոնմորանսի) ։ Ներկայանալ ամէն օր Ազգատախնամի գրասենեակը՝ 32 բիւ տը Թրէվիզ, Փարիզ (9) ։

## ՔԱՆԻ ՄԸ ՏՈՂՈՎ

ՎԱՐՉԱՊԵՏ ՏԸ ԿՈԼ հեռատեսիլէն եւ ձայնասփիւռէն ճառ մը խօսեցաւ՝ ճշդելով Ֆրանսայի տնտեսական ու ելմտական քաղաքականութեան գլխաւոր գիծերը։ Զօրավարը ըսաւ թէ պահանջուած զոհողութիւնները ի զերեւ պիտի չելլեն .— «Որոշեցինք խզուիլ մեր տկարութիւններուն հետ»։ «Ինչ որ կ՚ըլլայ, անելցուցան, մեր տնտեսական, դրամական, ել — մտական կացութիւնը կայունացնելու եւ դէպի անդունդ մեր անկումին առաջքն առնելու համար է»։ Խոստումներ ըրաւ նաեւ օրապահիկի փոնտի մը ստեղծման համար, կոչ ընելով բանուորական եւ գործատէրներու ընկերակցութեանց .— «Ես գիտեմ թէ ո՛ւր կը դիմեմ եւ ապահով եմ որ պիտի յաջողիմ»։

ԹՈՒՐՔԻՈՅ եւ Սուրիոյ սահմանագլուխին վրայ պատահած միջադէպին պատճառը մաքսանենգութիւն մըն է, կը հաղորդեն լրատեղեակ շրջանակներ․ Սուրիացիներ կը փորձէին զէնք անցնել Թրքական սահմանը ։

ԱՆԳԼԻՈՅ Վարչապետ Մաքմիլըն կոչ մը ըրաւ Կիպրոսի բնակչութեան, որ հանդարտին, բայց ոչ Յոյները եւ ոչ Թուրքերը մտիկ ըրին Վարչապետին կոչը, որ ըստ երեւոյթին, ազդեցութիւն չէ գործած կղզիին մէջ ։

ՆԱԽԱԳԱՀ ՔՈԹԻ իր ընտանիքին բաղմաթիւ անդամներուն ընկերակցութեամբ մեկնեցաւ Վիգիլ, ուր պիտի անցնէ Օգոստոս ամիսը ։

ԱՏԼԱՆՏԵԱՆ ՈՒԽՏԻ ընդհանուր քարտուղար Սփաք Օգոստոս չորսին պիտի երթայ Հռոմ՝ Իտալիոյ Վարչապետ Ֆանֆանիի հետ ուսումնասիրելու համար միջազգային հրատապ հարցեր ։

ԱՐԵՒՄՏԵԱՆ ԳԵՐՄԱՆԻՈՅ Վարչապետ Ատընաուըր յուշագիր մը ղրկեց Մոսկուա .— Դաշնակցային կառավարութիւնը յոյս ունի որ Խ. Միութիւնը դէմ պիտի արտայայտուի ջրածին զէնքերու պատրաստութեան ։ —

ՀԱՅԻԹԻԻ Ազգ. Ժողովը վեց ամսուան համար միապետական իրաւունք տուաւ Նախագահ Ֆրանսուա Տիւվալիէի, որ երկիրը կառավարէ հրամանագիրներով։

ԱՄԵՐԻԿԱՑԻՔ Խաղաղական Ովկիանոսի Ճոնսըն կղզիի մէջ արձակեցին հիւլէական ռումբ կրող առաջին հրթիռը․ փորձը յաջողութեամբ պսակուեցաւ ։

ԱՆԳԼԻԱ պաշտօնապէս ճանչցաւ Իրաքի հանրապետական կառավարութիւնը ։

ՉԻԼԻԻ Խորհրդարանը օրէնք մը քուէարկեց, որով համայնավար կուսակցութիւնը օրինաւոր կը ճանչցուի երկրին մէջ եւ իրաւունք ունի այսուհետեւ քաղաքական գործունէութիւն ունենալու ։

Խ. ՄԻՈՒԹԻՒՆԸ բողոքագիր մը յանձնեց Իտալիոյ՝ որ թոյլ կուտայ իր օդակայաններուն ու նաւահանգիստներուն օգտագործումը՝ Ամերիկացիներուն, դէպի Լիբանան իրենց արշաւին մէջ ։ Իսկ Իսրայէլի կառավարութեան ղրկուած բողոքագիրի մը մէջ, Մոսկուա կը չեշտէ թէ Միջին Արեւելքի մէջ Իսրայէլ գործնապէս կը մասնակցի անգլեւամերիկեան յարձակումներուն՝ թոյլ տալով իր օդային սահմաններուն օգտագործումը ։

ԻՍՐԱՅԷԼԵԱՆ բանտի մը մէջ ըմբոստութիւն ծագեցաւ. 56 հոգի փախաւ. 11 հոգի կարելի եղաւ ձերբակալել, երկու պահակներ սպաննուեցան։ Փախստականները Արաբներ էին, որ գացին Յորդանանի ուղղութեամբ ։ —





## Օրեր եւ Ժամերու

ՀԱՄԱՐ

ԳԱՒԱՌԻ ՄԷՋ ԴԻՄԵԼ .—

ՄԱՐՍԷՅԼ, Ա. Քէօսէեան (Ֆօթօ Ռէքս), 2 Րիւ Պերնար տիւ Պուա ։

ՆԻՍ, Գ. Խասրովեան, 1 Րիւ Ամիրալ տը Կրաս ։

ԼԻՈՆԻ ՄԷՋ

Մխաք Միրզէ, 194 Րիւ Վանտոմ

ԿՐԸՆՈՊԼԸ, Ս. Միսլեան,, 17 կամ 28պիս, Քուր Ժան Ժոռէս։

ՍԷՆ ՇԱՄՈՆ, Ս. Ընտրիկեան, 8, Րիւ Ժան Տիւկա ։

ՎԻԷՆԻ ՄԷՋ .— Պ. Կ. Տերմոյեան ։

ԱՐՏԱՍԱՀՄԱՆ

ԵԳԻՊՏՈՍ .— Յուսաբեր ։

ԻՏԱԼԻԱ, Տօքթ. Ե. Արզումանեան, վիա Քափելլարի 3 ։

## ՓՈԽԱՆ ԾԱՂԿԵՊՍԱԿԻ

Տէր եւ Տիկին Ստեփան Եաղճեան եւ զաւակները իրենց քրոջ՝ Տիկին Մարի Մալեզեանի մահուան առթիւ (Պուէնոս Այրէս) հազարական ֆրանք կը նուիրէ Կարմիր եւ Կապոյտ Խաչերուն։ (Ստանալ «Յառաջ»էն)։

## ՍՏԻՊՈՂԱԲԱՐ Կ՚ՈՒԶՈՒԻՆ

Երկու վկայեալ հիւանդապահուհիներ կ՚ուզուին հայկական զոյգ ծերանոցներուն համար (Անտիյի եւ Մոնմորանսի) ։ Ներկայանալ ամէն օր Ազքատախնամի գրասենեակը՝ 32 բիւ տը Թրէվիզ, Փարիզ (9)։

## ԴՊՐՈՑԱՍԷՐ ՏԻԿՆԱՆՑ ՎԱՐԺԱՐԱՆ

Դպրոցասէր Տիկնանց վարժարանին 1958 – 1959 տարեշրջանի արձանագրութիւնները սկսած են. ամէն անոնք որ կը փափաքին ղրկել իրենց զաւակները, պէտք է փութան այժմէն իսկ դիմում ընել հաստատութեան տնօրէնութեան ։

Վարժարանին նպատակն է՝ պատրաստել միջնակարգ ուսման պաշարով օժտուած եւ հայեցի դաստիարակութիւն ստացած ճշմարիտ Հայուհիներու սերունդ մը ։

Դպրոցասէրի ուսման ծրագիրը կ՚ընդգրկէ երկու ուրոյն բաժիններ .—

Ա .— Ֆրանսականը, որ տառացիօրէն կը հետեւի պետական լիսէներու արդիական բաժնի պաշտօնական ծրագրին — անգլերէն եւ սպաներէն լեզուներով — կը պատրաստէ պըըվէի եւ քալորէայի ։

Բ .— Հայկականը որ կ՚օժտէ սանուհիները հայագիտական ծանօթութիւններով, հայ լեզուի, գրականութեան, հայ կրօնի եւ պատմութեան, Հայաստանի աշխարհագրութեան մարզերուն մէջ ։

Աշակերտուհիներ կ՚ընդունուին ութ տարեկանէն սկսեալ։ Տարեվճարն է 150000 ֆրանք, վճարելի եռամսեայ եւ կանխիկ։

Աւելի մանրամասնութիւններու համար դիմել հաստատութեան տնօրէնութեան ։ 1 Պուլըվար տիւ Նոր, Լը Րէնսի։ հեռաձայն Լը Րէնսի 172։

Հաղորդակց .— Էկլիզ տը Բանթէնէն առնել 146 թիւ օթօպիւսը եւ իջնել Րէնսի փավիյեօն ։


Imprimé sur les presses du journal HARATCH
— 11, Rue [illegible], 17 · PARIS (9e) —


## ՄԵՐ ԲԱԺԱՆՈՐԴՆԵՐՈՒՆ՝ ԱՐՁԱԿՈՒՐԴԻ ԱՌԹԻՒ

Արձակուրդի առթիւ կը խնդրուի մեր այն բաժանորդներէն, որոնք կը փափաքին իրենց հասցէն փոխել, հարիւր ֆրանք ղրկել վարչութեան, ինչպէս նաեւ՝ նորին հետ, իրենց նախկին հասցէն ։

Կը խնդրուի հեռաձայնով չյայտնել նման փոփոխութիւններ, այլ՝ միայն գրաւոր ։ Շնորհակալութեամբ՝

ՎԱՐՉՈՒԹԻՒՆ

## ԿԱՊՈՅՏ ԽԱՉԻ ԿԱՅԱՆ

Բ. խումբը Փարիզէն կը մեկնի Օգոստոս վեցին, Կառ տը Լիոն գտնուիլ ոչ աւելի կանուխ քան ժամը ճիշդ 22, որպէսզի կարելի ըլլայ անմիջապէս ներս մտնել։ Հաւաքատեղի Փլաս տը Լ՚Օռլօժ։

Լիոնի շրջանի պզտիկներու մեկնում 4 Օգոստոսին։ Ժամը ճիշդ 16ին գտնուիլ Փէռաշի կայարանի ժամացոյցին տակ ։



## ՑՈՒՇԱՏԵՏՐ

Հ. Յ. Դ. ՄԱՐՍԷՅԼԻ Շրջ. կոմիտէն ժողովի կը հրաւիրէ հետեւեալ ենթակոմիտէները, ուր խիստ քանչիւր ընկերոջ ներկայութիւնը պարտաւորիչ է ։

Նիկոլ – Դուման, Վռամեան եւ Արամ Այս Կիրակի, կէսօրէ վերջ ։

Մուրատ, Քրիստափոր եւ Հայաստան 9 Օգոստոս Շաբաթ, ժամը 21ին։

Թաթուլ, Ընկեր Կարօ, 10 Օգոստոս, Կիրակի կէսօրէ վերջ ։

Վարանդեան, Ընկ. Յ. Օ.ի բնակարանը 11 Օգոստոս, երկուշաբթի իրիկուն ։

Այս բոլոր ժողովներուն ներկայ կ՚ըլլան Շրջ. ժողովի պատգամաւոր ընկերները ։

ԼԻՈՆ .— Հ. Յ. Դ. «Վարանդեան» կոմիտէն ընդհ. ժողովի կը հրաւիրէ իր բոլոր ընկերները, այս Ուրբաթ, ժամը 20·30ին, Յոյներու սրահը։ Կարեւոր օրակարգ ։

ՍԷՆԹ ԷԹԻԷՆ .— Հ. Յ. Դ. «Անտոք» ենթակոմիտէի ընդհ. ժողովը այս Շաբաթ, ժամը 21ին, հայ մատրան մէջ։ Բոլոր ընկերներու ներկայութիւնը անհրաժեշտ է ։

## ԹՐՔԱԿԱՆ ԴՐԱՄԻ ԱՐԺԵԶՐԿՈՒՄԸ

Պոլսոյ վերջին թղթաբերէն կը քաղենք հետեւեալ մանրամասնութիւնները թրքական դրամի արժեզրկման եւ այդ ուղղութեամբ տրուած կարգ մը որոշումներու մասին։

*Ելմտական նախարար Հասան Փոլաթքան, , Տէֆթէրտարութեան մէջ հանդիպում մը ունեցաւ լրագրողներուն հետ եւ կարգ մը բացատրութիւններ տուաւ ստացուած 359 միլիոն տոլարի արտաքին վարկերու մասին։ Փոլաթքան, յայտարարեց թէ «ամենալաւ ձեւով պիտի գործածուի այս մեծ օժանդակութիւնը, որ նախկին պարտքերու ալ յետաձգումով կը բարձրանայ 800 միլիոն տոլարի։*

*« — Կարգ մը ապրանքներու գիները, շատ բարձր էին համեմատաբար աշխարհի գիներուն։ Արտածումի հնարաւորութիւններն ալ նոյն համեմատութեամբ դժուարացած էին։ Ներկայիս արտածումի եւ ներածումի գիները հաւասարակշռած ենք միջազգային սակագիներուն հետ։ Այս կերպով թէ՛ արտածման լայն միջոցներ ապահովուած պիտի ըլլան եւ թէ լայն տեղ պիտի տրուի ներածման։ Կարելի պիտի ըլլայ տարեկան 630 միլիոն տոլարի ներածում ընել եւ այսուհետեւ կարելի պիտի ըլլայ գտնել ներածման ապրանքներ՝ առատ քանակութեամբ։*

*Ցապաղած թրանսֆէրներն ու 1961էն վերջ վճարելի 400 միլիոն տոլար պարտքը յետաձգուած են Եւրոպայի տնտեսական համագործակցութեան կազմակերպութեան հետ խորհրդակցաբար։ Իսկ ;չհմերը պիտի ճշդուին Սեպտեմբերի խորհրդաժողովին։*

*Այս նոր որոշումով արտածումի* քուրը *երեքի բաժնուած է.— 210, 280 եւ 620 ղրուշի փրիմներով։ Այս կերպով ջնջուած է նաեւ տէպլոքաժի քուրը։ Այս ձեւով* Առեւտրական քուր *անունին տակ միակ ձեւի մը վերածուած են 1930էն ի վեր գոյութիւն ունեցող առեւտրական զանազան քուրերը։*

*Նախարարը աւելցուց իր խօսքերուն, թէ Առեւտրական քուրերն ու առնուած նոր որոշումները գործադրութեան մտած են։ Արտասահմանէն ապահովուած 359 միլիոն տոլարի վարկին եւ դրամին արժէքով տրուած որոշումը, լաւ դիմաւորուած է քաղաքիս տնտեսական շրջանակներուն կողմէ։*

*Այսուհետեւ տոլարի պաշտօնական գինը պիտի ըլլայ 902 ղրուշ։*

## ՔԱՆԻ ՄԸ ՏՈՂՈՎ

*ԶՕՐ. ՏԸ ԿՈԼ անձնապէս պիտի ներկայացնէ Սահմանադրութիւնը՝ որ իր վերջնական ձեւին մէջ պիտի մտնէ Օգոստոս 20ին։ Օգոստոս 23–31 պիտի երթայ Ալժերիա եւ անդրծովեան միւս շրջանները։ Սեպտեմբեր չորսին պիտի խօսի Փարիզի մէջ,* Փլաս տը լա Ռէփիւպլիք*։ Սեպտեմբեր 5–25 պիտի խօսի Ֆրանսայի ինը մեծ շրջաններու բնակչութեան, բոլորին ալ բացատրելով՝ թէ ինչու «այո՛» պէտք է ըսել նոր Սահմանադրութեան։*

*ՔՈՒՅՊԻՉԵՒԻ մէջ Խրուշչեւ բացումը կատարեց աշխարհի մեծագոյն ջրաելեկտրակայանին, որուն համար Ժընեւի լիճէն 11 անգամ մեծ արուեստական լիճ մը շինուած է։ Խրուշչեւ սպառնաց Անգլիոյ եւ Ամերիկայի.— Եթէ նոր պատերազմ մը ըլլայ՝ քարուքանդ պիտի ընենք ձեզի եւ յաւիտենական խաղաղութիւնը հաստատենք աշխարհի վրայ։*

*ԱՄԵՐԻԿԵԱՆ «Նոթիլիւս» հիւլէական սուզանաւը աշխարհի վրայ առաջին անգամ ըլլալով բեւեռային սառնակոյտերու տակէն անցնելով Խաղաղականէն գնաց Ատլանտեան. 3392 քիլոմեթր ճամբայ կտրեց, չորս օր կտրուած մնալով աշխարհէն։ Միջազգային բոլոր թերթերը «Նոթիլիւս»ի անձնակազմին հերոսութեան գովքը կ՚ընեն, աւելցնելով թէ նաւապետ Անտէրսընի անունն ալ անցաւ պատմութեան։ Մեծ խանդավառութիւն՝ Միացեալ Նահանգներու մէջ, ուր կ՚ըսեն. — Ահաւասի՛կ մեր պատասխանը՝ ծանր Սպուտնիկներուն։ Միւս կողմէ կը յայտարարուի թէ շինուած են հիւլէական երկու սուզանաւեր եւս որոնք այս ամիս ջուր պիտի իջնեն. «Թրիթօն» պիտի արձակուի Օգոստոս 19ին. 134 մեթր երկայնք ունի («Նոթիլիւս»ը՝ 96 մեթր). քանի մը օր ետք ջուր պիտի իջնէ «Սի տրակօն»։ 18 հիւլէական այլ սուզանաւերու շինութիւնը կը սկսի ամերիկեան նաւաշինարաններուն մէջ։*

*ԼԻԲԱՆԱՆԻ «Միութեան «Ճակատ»ը որ կը համախմբէ ընդդիմադիր բոլոր կազմակերպութիւնները, ծանուցագիր մը ղրկած է ՄԱԿի բոլոր անդամներուն՝ որպէսզի անոնք ընդդիմանան Լիբանանի Արտաքին նախարար Շարլ Մալիքի թեկնածութեան եւ ընդհանուր ժողովի նախագահ չընտրեն զայն։*

*ԱՆԳԼԻԱՑԻ աշխատաւորական երեսփոխան Էլտրման կ՚առաջարկէ որ միջազգային կազմակերպութիւն մը հիմնուի Միջին Արեւելքի քարիւղի օգտագործման համար, այնպէս՝ ինչպէս «Քոմիւնոթէ շարպոն–ասիէ»ն։*

*ԴԱՄԱՍԿՈՍԻ մէջ Արաբական Միացեալ Հանրապետութեան բանակի ընդհանուր հրամանատար մառեշալ Ամէր ժողով մը գումարեց՝ մասնակցութեամբ սուրիացի եւ եգիպտացի բարձրաստիճան զինուորականներու, կը հաղորդէ Գահիրէի ձայնասփիւռը։*

# Օրեր եւ Ժամեր

## ՇԱՒԱՐՇ ՄԻՍԱՔԵԱՆ

### ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

*Սէնթ Անէն (Մարսէյլ) Միհրան Մեծիկեան շնորհակալութիւն կը յայտնէ Հ. Յ. Դ. Թաթուլ խումբին, որ մամուլով ցաւակցութիւն յայտնած է իր հօրեղբօր՝ Մանասի մահուան առթիւ (Հայաստան)։ Այս առիթով փոխան ծաղկեպսակի 1000 ֆրանք կը նուիրէ Մշակոյթի Տան Շաւարշ Միսաքեան սրահին.* (Ստանալ Յառաջէն)։

×

*Պօմոնի Կ. Խաչի վարչութիւնը շնորհակալութեամբ ստացած է Պ. Գրիգոր Պաղտասարեանէ 1000 ֆր. Պ. Մանուկ Արապկեանի մահուան տարելիցի հոգեհանգստեան առթիւ։*

×

*Լիոնի Եկեղեցաշէն Յանձնախումբը շնորհակալութեամբ ստացաւ, ստորեւ յիշուած Փոն տը Շէրիի հայրենակիցներէ հետեւեալ գումարները ի նպաստ Լիոնի եկեղեցւոյ շինութեան։ Ի մասնաւորի խորին շնորհակալութիւն կը յայտնէ ծերունազարդ բարեպաշտ Ստանօզցի հայրիկին՝ Պ. Գրիգոր Սոմունեանի, որ իր ամբողջ խնայողութիւնը՝ 50.000 ֆր. կը նուիրէ Լիոնի եկեղեցւոյ շինութեան։*

*Պ. Միսաք Եղիաեան 5.000 ֆր., Արիս Խաչատուրեանէ 10.000, Յարութիւն Թէրզեանէ 2.000, Կարապետ Յովհաննէսեանէ 1.000, Յովհաննէս Ահարոնեանէ 1000, Գրիգոր Նահապետեանէ 1.000, Տիկ. Ազատուհի Ալիքեանէ 1.000, Պ. Յակոբ Քէօրօղլանեանէ 1.000, Պ. Յակոբ Զագրեանէ 1.000, Պ. Յակոբ Ասատուրեանէ 500 ֆր.։*

×

*Եկեղեցաշէն Տիկնանց Միութիւնը շնորհակալութեամբ ստացաւ հետեւեալ նուիրատուութիւնները ի նպաստ Լիոնի եկեղեցւոյ շինութեան.— Փոքրիկն Քաթրին Պօյաճեանէ իր ծննդեան առթիւ 5.000, Պ. Վարդեվառ Գամպէրեանէ իր անուան տօնին առթիւ 2000, Պ. Լեւոն Տօնիկեանէ (Փարիզէն) իր զաւկին ամուսնութեան առթիւ 5000, քանի մը ընտանիք հաւաքոյթի մը ընթացքին 76.690։*

×

*Փարիզէն Տիկ. Վեհանոյշ Զրրաչեան 91.000 ֆր. նուիրած է Լիոնի նոր եկեղեցւոյ երկու արծաթ աշտանակներու գնման համար։ Ազնիւ Տիկնոջ այս սրտաբուխ եւ առատաձեռն նուէրը խիստ գնահատանքի արժանի է եւ օրինակելի, որ առիթ կուտայ մեզ կոչ ընել մեր բոլոր բարեպաշտ հայ տիկիններու մասնակցիլ նուիրատուութիւններով, եկեղեցւոյ կարեւոր առարկաներու գնման համար։ Նուիրատուներու անունները մասնաւոր տոմարի մը մէջ պիտի արձանագրուին։*

ԵԿԵՂԵՑԱՇԷՆ ՏԻԿՆԱՆՑ ՄԻՈՒԹԻՒՆ

### ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ ԵՒ ՄԱՏԱՂ

Նիս.— *Նիսի եւ շրջանի Հայ Առաքելական եկեղեցւոյ Կրօն. Ընկերակց. Վարչութիւնը կը ծանուցանէ թէ կիրակի 17 Օգոստ. Ս. Աստուածածնի վերափոխման տօնին առթիւ Տէր Ատոմ քհնյ. պիտի պատարագէ եւ հոգեհանգստեան պաշտօն պիտի կատարուի ի յիշատակ ազգային բարերարներ՝ հանգուցեալ* Զամքէրթէճի, *որ կառուցանել տուած է Նիսի Ս. Աստուածածին մատուռը 1928ին,*

Գալուստ եւ Նուարդ Կիւլպէնկեաններու *որոնք կառուցանել տուին մատրան կից երիցատան շէնքը։ Նոյնպէս ամէն անոնց որոնք բարերար հանդիսացած են եկեղեցւոյն։*

*Եկեղեցւոյ անուան տօնախմբութեան առթիւ, ինչպէս ամէն տարի, նոյն օրը տեղի պիտի ունենայ մատաղ եւ խաղողօրհնութիւն։*

*Կը հրաւիրուին հանգուցեալ բարերարներուն յիշատակը յարգողները եւ բոլոր հաւատացեալները։*

### ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆ

Վարագայ Ս. Խաչ Եկեղեցւոյ Արնուվիլ

*Վերափոխման Ս. Աստուածածնի տօնին առթիւ 17 Օգոստ. կիրակի օր Ս. եկեղեցւոյն մէջ կը պատարագէ եւ կը քարոզէ Հոգեշնորհ Տ. Գարեգին Վրդ. Սարգիսեան եւ յետ պատարագի կը կատարուի խաղողի օրհնութեան արարողութիւնը։*

*Սիրով կը հրաւիրենք շրջանիս բարեպաշտ ժողովուրդը ներկայ ըլլալու այս պաշտամունքին։*

Հոգաբարձութիւն

### *ԴԱՇՏԱՀԱՆԴԷՍ ԷՔՍ ԼԷ ՊԷՆԻ ՄԷՋ*

Էքս լէ Պէնի *դաշտահանդէսը պիտի կատարուի Օգոստ. 17ին կիրակի առաւօտ ժամը 9էն մինչեւ իրիկուան եօթուկէս։ Երթեւեկի համար օթոքարներ ապահովուած են՝ իւրաքանչիւր կէս ժամը անգամ, Թերմալի բաղնիքին դիմացի* փարկին *քով. իջնել Թէլէֆէրիքի մեկնակէտը, ուր կը գտնուի դաշտը։ Գեղեցիկ մարգագետնին վրայ պաղ ջուր, ըմպելիներ, հաճելի ժամանց, գեղարուեստական բաժին եւ ճոխ վիճակահանութիւն։ Ժամը 10ին կը սկսի Ս. պատարագ մատուցմամբ Օշին Վրդ. Նիկոլեանի։*

*Կը խնդրուի շրջականերու Հայութենէն քաջալերել այս գովելի հաւաքոյթը, որուն հասոյթով պիտի հրատարակուի Փարիզի Կրթ. Մարմնոյ ծրագրած մեթոտիք գրքոյկը, ցրուելու համար ձրիօրէն։*

### ԿԻՐԱԿԻ ՕԳՈՍՏՈՍ 17

**ԲՈԼՈՐԴ ԴԷՊԻ PALADRU (Isère)**

Հ. Յ. Դ. ՆՈՐ ՍԵՐՈՒՆԴԻ ԲԱՆԱԿԱՎԱՅՐԸ

Բանակումի վարչութեան կազմակերպած

ԲԱՑԱՌԻԿ ԴԱՇՏԱՀԱՆԴԷՍԻՆ

*ԳԵՂԱՐՈՒԵՍՏԱԿԱՆ ՃՈԽ ՅԱՅՏԱԳԻՐ*

Մասնակցութեամբ Նոր Սերունդի Բոլոր Մասնաճիւղերուն

*ԵՐԳ, ՊԱՐ, ՆԵՐԿԱՅԱՑՈՒՄ*
*ԽԱՂԵՐ ԵՒ ԱՆԱԿՆԿԱԼՆԵՐ*
*ԽՆԱՄՈՒԱԾ ՊԻՒՖԷ*

Կեդրոնական Ֆրանսայի զանազան շրջաններէն օթոքարներ պիտի մեկնին։

*Անհատ այցելուներու համար հաղորդակցութեան միջոցներ՝* Քառ Ռիքու՝ *Լիոնէն եւ Կրընոպլէն առնել եւ իջնել* Փալատրիւ (Լա Փիլ)։

### ՏԱՐԵԿԱՆ ՄԵԾ ԴԱՇՏԱՀԱՆԴԷՍ

Համախարբերդցիական Միութեան Սէնթ Անթուանի Մասնաճիւղին, *հովանաւորութեամբ Միութեան Կեդր. Վարչութեան։*

*Այս կիրակի ամբողջ օրը,* «Նանարեան» *օդասուն ագարակը։*

*Հանդիսավայր երթալու համար Փլաս տ՚Էքսէն առնել 26 թիւը եւ իջնել նախկին Օքթրուա Լա Պասթիա։*

*Ղեկավարութեամբ դերասան Թրազօշի, մասնակցութեամբ երգչուհի Տիկ. Մալվինէ Թիւրապեանի եւ այլ ուժերու, պիտի բեմադրուի ծանօթ օփերէթ ԱՐՇԻՆ ՄԱԼ ԱԼԱՆ։* Գեղարուեստական ճոխ բաժին։

Ռատիօ Ալքազ *իր տիսքերով եւ ձայնասփիւռով հանդէսին փայլը պիտի աւելցնէ։* Ճոխ պիւֆէ եւ շիշ քէպապ մատչելի գիներով։ *Ցաւելեալ աթոռներ եւ սեղաններ ապահովուած են բոլորին համար։* Մուտքը ազատ է։

### ՊԱՏԳԱՄԱՒՈՐԱԿԱՆ ԺՈՂՈՎ

*Համախարբերդցիական Միութեան Ֆրանսայի շրջանի 18րդ պատգմ. ժողովը պիտի գումարուի 16 եւ 17 Օգոստոս, Մարսէյլի արուարձաններէն Սէնթ Անթուանի մէջ։ Պատգամաւորներէն կը խնդրուի ճշդապահ ըլլալ։ Առաջին նիստը կը բացուի շաբաթ առաւօտ ժամը 9ին։ Մուտքը ազատ է բոլոր հայրենակիցներուն։*

*Ժողովավայրն է* Պառ տիւ Վիատիւք *(Մարտիկեան),* Վալոն տէ Թիւվ, Սէնթ Անթուան։ *Հոն երթալու համար Փլաս տ՚Էքսէն առնել 26 թիւ (գծուած) թրոլէն եւ իջնել վերջաւորութեան։*

### «ԱՍՏՈՒԱԾԱԾԻՆ»Ը ՏԷՍԻՆԻ ՄԷՋ

*Տէսինի Կրօն. Ընկերակցութիւնը կը փութայ ծանուցանել հասարակութեան թէ, ուրբաթ 15 Օգոստ. առաւօտ ժամը 8,30ին, Սուրբ Աստուածածնայ տօնին առթիւ Ս. պատարագ պիտի մատուցուի տեղւոյն Ս. Աստուածածնայ եկեղեցւոյ մէջ։ Տեղի պիտի ունենայ նաեւ աւանդական խաղողօրհնէք եւ մատաղի բաշխում։*

**Imprimé sur les presses du journal HARATCH**
— 17. Rue Bleue. 17 — PARIS (9e) —

## ՔԱՆԻ ՄԸ ՏՈՂՈՎ

*ԹՈՒՐՔԻՈՅ Արտաքին նախարար Զօրլու յայտարարեց թէ Անգարա միշտ կը փափաքի Կիպրոսի բաժանումը՝ Յոյներու եւ Թուրքերու միջեւ:» Իսկ Մակարիոս Արք․ի մէկ յայտարարութեան համաձայն, եթէ Անգլիա փորձէ իր ծրագիրը գործադրել կղզիին մէջ՝ Յոյները ինքնավարութիւն պիտի պահանջեն:*

*ԱՆԳԼԻԱ առաջին անգամ ըլլալով ծանր թնդանօթներ հանեց Յորդանան․ այս ցամաքահանումը ցոյց կուտայ թէ անգլիական ուժերը տակաւին պիտի մնան Յորդանանի մէջ:*

*Խ․ ՄԻՈՒԹԵԱՆ մէջ մեռած է զօրավար Քափիչքին, որ Բ․ Աշխարհամարտի ընթացքին պաշտպանած էր Օտեսան եւ Սեպասթափոլը:*

*ԹՈՒՐՔԻՈՅ Ազգ․ Ժողովը իր աշխատանքը վերջացուց աղմուկ – աղաղակներու մէջ․ օրակարգին մաս կը կազմէին Թուրքիոյ արտաքին քաղաքականութիւնը եւ նոր ստացած տնտեսական օժանդակութիւնը, որոնք նոր առիթ մը ընծայեցին ընդդիմադիր երեսփոխաններուն՝ ծանրօրէն քննադատելու համար կառավարութեան քաղաքականութիւնը:*

*ՊԷՅՐՈՒԹԻ մէջ լրագրող մը եւս սպաննուեցաւ․ Ալպէր Տիպ, երբ սափրիչի մը քով կ'ածիլուէր, խումբ մը անծանօթներ կրակ բացին միաժամանակ սպաննելով սափրիչը: Ծանօթ՝ ընդդիմադիրներու դէմ տարած իր պայքարով, հակառակ համայնավար այս լրագրողը բարեկամական կապեր ունէր սուրիացի ղեկավարներու, Կլուպ Փաշայի եւ Յուլիս 14ին Պաղտատի մէջ սպաննուած իշխան Ապտիւլիլահի հետ:*

*ԱՐԺԱՆԹԻՆԻ մէջ Փերոնականները յայտարարեցին թէ իրենց գործունէութեան պիտի վերսկսին՝ մասնակցելով Փամփայի եւ Միսիոնի ընտրութիւններուն: Նախագահ Փերոնի տապալումէն ետք փերոնական կուսակցութիւնը արգիլուած էր Արժանթինի մէջ, բայց Նախագահ Ֆրոնտիսիի ընտրութենէն ի վեր (չորս ամիս առաջ) Փերոնականները գործունէութեան անցած են կրկին:*

*ՑԻՒՐԻԽԻ մէջ ֆրանքօ-եգիպտական համաձայնագիրը վերջնապէս ստորագրուեցաւ․ երկու երկիրներու միջեւ մշակութային, ելմտական եւ տնտեսական գործակցութիւնը կը վերսկսի: Եգիպտոսի Տնտեսական նախարարը այս առիթով յայտարարեց․— Ֆրանսա պիտի վճարէ պատերազմի վնասները:*

*ԱՐԵՒԵԼԵԱՆ ՊԵՐԼԻՆԻ Իէնա համալսարանի տեսուչ Փրոֆ․ Համէլ ապաստանեցաւ Արեւմտեան Գերմանիա, նոյն համալսարանին 400րդ տարեդարձին առիթով նախատեսուած հանդիսութիւններէն տասը օր առաջ:*

*ՊԱՂՏԱՏԻ ձայնասփիւռը ազդարարութիւն մը ըրաւ Իսրայէլի՝ զգուշացնելով զայն արաբական որեւէ երկրի վրայ որեւէ ձեւի յարձակումի մը դէմ:*

*ՓՈԹՈՐԻԿԸ մեծ աւերներ գործեց Ֆրանսայի մէջ, Տրոմի եւ Արտէշի մէջ կայծակի հետեւանքով չորս միլիոնի վնաս կայ:*

*ԼՈՆՏՈՆԷՆ կը հաղորդեն թէ Հիւս․ Ծովէն Միջերկրական անցան խորհրդային չորս սուզանաւեր, որոնք հաւանաբար կ'երթան Եգիպտոս, զօրացնելու համար Արաբական Հանրապետութեան նաւատորմիղը:*

*ԱՄԵՐԻԿԵԱՆ խորհրդարանը քուէարկեց օրէնք մը, որուն համաձայն Ամերիկայի նախկին նախագահները տարեկան 25·000 տոլար պիտի ստանան, իսկ անոնց այրիները՝ 10·000 տոլար: Օրէնքը յանձնուած է Նախագահ Այզընհաուըրի, վաւերացնելու համար:*



ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ

*Փարիզի Հայ Աղք․ Ընկերակցութեան տարեկան պարահանդէսը՝ Հոկտեմբեր 26ին, Ժօրժ Ե․ի սրահներուն մէջ:*



ՖՐԱՆՔԵՒՀԱՅԿԱԿԱՆ ԹԱՏԵՐԱԽՈՒՄԲ

Ե․ ՆԵՐԿԱՅԱՑՈՒՄ

Հիմնադիր – ղեկավար

ԴԵՐԱՍԱՆ Ա․ ՄԻՍԻՐԵԱՆ

Կը ներկայացնէ

*Մեր ազգային անմահ երգիծաբան*

Յ․ ՊԱՐՈՆԵԱՆԻ

### ՊԱՂՏԱՍԱՐ ԱՂԲԱՐԸ

MAITRE BALTHAZAR

*Թարգմ․ Ժ․ Մ․ Սիլնցքի*

*Առաջին անգամ ըլլալով ֆրանսերէն լեզուով, հայ Մոլիէռը ծանօթացնելու համար օտարներուն:*

*Թատերախաղին փորձերը սկսած են արդէն, բծախնդիր պատրաստութեամբ, հայ ու ֆրանսացի բեմի ու շարժանկարի ծանօթ արուեստագէտներու մասնակցութեամբ․—*

Հայկուհի Խտըշեան, *Աւետիս* Միսիրեան, Ռոժէ Մարլաֆ եւ Օլիվիէ Մաքօ, *ինչպէս նաեւ* Ռուբէն Ասլանեան, Ռոպէր Ժոնս, Ժաք Ֆելիսիէ եւ Ժըներվիէվ Լըֆլեռ: *Բեմադրութիւն* Աւետիս Միսիրեանի, *Թեքնիք խորհրդական* Ռոժէ Մարլաֆ:

Ատափթասիոն *ֆրանսերէնի՝* Օլիվիէ Մաքօ, *դիմայարդար* Կարպիսխուպէսէրեան, *առաջին ներկայացումը տեղի կ'ունենայ Հոկտեմբերէն սկսեալ:*

*Մանրամասնութիւնները յաջորդով:*

ՍԻՓԱՆ - ԿՈՄԻՏԱՍ

ԵՐԳՉԱԽՈՒՄԲԻՆ ՀԱՄԵՐԳԸ

Նոյեմբեր 2ին, Սալ Կավօ

ՏԱՐԵԿԱՆ ՊԱՐԱՀԱՆԴԷՍԸ

Դեկտ․ 7ին Սալ տէ գ'Ամպասատէօռ

*Վարչութիւնը կը խնդրէ որ հայկական կազմակերպութիւնները նկատի ունենան այս թուականները:*



ԴՊՐՈՑԱՍԷՐ ՏԻԿՆԱՆՑ ՎԱՐԺԱՐԱՆ

*Դպրոցասէր Տիկնանց վարժարանին* 1958 – 1959 *տարեշրջանի արձանագրութիւնները սկսած են: Ամէն անոնք որ կը փափաքին ղրկել իրենց զաւակները, պէտք է փութան այժմէն իսկ դիմում ընել հաստատութեան տնօրէնութեան:*

*Վարժարանին նպատակն է՝ պատրաստել միջնակարգ ուսման պաշարով օժտուած եւ հայեցի դաստիարակութիւն ստացած ճշմարիտ Հայուհիներու սերունդ մը:*

*Դպրոցասէրի ուսման ծրագիրը կ'ընդգրկէ երկու ուրոյն բաժիններ․—*

*Ա․— Ֆրանսականը, որ տառացիօրէն կը հետեւի պետական լիսէներու արդիական բաժնի պաշտօնական ծրագրին — անգլերէն եւ սպաներէն լեզուներով — կը պատրաստէ* պըրվէի եւ պաքալորէայի:

*Բ․— Հայկականը որ կ'օժտէ սանուհիները հայագիտական ծանօթութիւններով, հայ լեզուի, գրականութեան, հայ կրօնի եւ պատմութեան, Հայաստանի աշխարհագրութեան մարզերուն մէջ:*

*Աշակերտուհիներ կ'ընդունուին ութ տարեկանէն սկսեալ: Տարեվճարն է* 150000 *ֆրանք, վճարելի եռամսեայ եւ կանխիկ:*

*Աւելի մանրամասնութիւններու համար դիմել հաստատութեան տնօրէնութեան:* 1 Պուլըվար տիւ Նօր, Լը Ռէնսի: հեռաձայն Լը Ռէնսի 172:

*Հաղորդակցութ․— Էկլիզ տը Բանթէնէն առնել* 146 *թիւ օթօպիւսը եւ իջնել Ռէնսի Փավիյեօն:*

### « ԴՐՕՇԱԿ »Ի

*ԱՌԱՋԻՆ ՏԱՍՆԱՄԵԱԿԻ ՀԱՒԱՔԱԾՈՆ*

*Հայաստանի յեղափոխական շարժման պատմութիւնը իր բոլոր մանրամասնութիւններով արձանագրուած է «Դրօշակ» ամսագրին մէջ, որուն առաջին տասնամեակի թիւերէն մնացած էր մէկ հաւաքածոյ եւ խնամքով կը պահուէր Հ․ Յ․ Դ․ Փարիզի Թանգարանին մէջ:*

*Անգտանելի այս հաւաքածոն լուսապատկերներով հրատարակուեցաւ, որպէս զի ամէն Հայ պատեհութիւն ունենայ լրիւ տեղեկանալու իր ազատատենչ հայրենիքի անվերջ մաքառումներուն եւ հրաշալի յարութեան:*

*« Դրօշակ»ի առաջին տասնամեակի* (1890 – 1901) *հաւաքածոն կը հրատարակուի երկու հատորով:*

*Առաջին հատորը* (1890–1897) *նոր լոյս տեսաւ,* 750 *մեծադիր էջ: Թղթակազմի գինն է* 1800 *Ֆրանք, շքեղ կազմուած՝* 2400 *Ֆրանք:*

*Գրատուն Պարսամեան,* 46, րիւ Րիշէ, *Փարիզ* (9):

ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ

*Ֆ․ Կ․ Խաչի Փարիզի մասնաճիւղին տարեկան պարահանդէսը* 28 *Դեկտեմբերին, կիրակի Լիւթէսիայի մեծ սրահին մէջ, սրահին նուագախումբով:*

×

*Ֆ․ Կ․ Խաչի Մարսէյլի մասնաճիւղի տարեկան մեծ պարահանդէսը Դեկտեմբեր քսանին, Սալոն Սփլանտիտի մէջ:*

×

*Սրբոց Թարգմանչաց տօնին առթիւ կազմակերպուած է հայ մշակոյթին նուիրուած շքեղ ցերեկոյթ մը որ տեղի պիտի ունենայ Հոկտեմբեր* 12 *կիրակի օր, ժամը* 15*ին, Սորպոնի մեծ Ամփիթատրոնին մէջ:*









Imprimé sur les presses du Journal HARATCH
— 17. Rue Bleue. 17 – PARIS (9e) —

